Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ




№ 3 ՓԵՏՐՎԱՐ 1957

digitised by A.R.A.R.@

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:

---

5452-Ա-Կ



# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ 39-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Ա. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ
Գվարդիայի գնդապետ

Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի 39-րդ տարեդարձը մեր Հայրենիքի աշխատավորները դիմավորում են հայրենասիրական չտեսնված վերելքի պայմաններում: Նրանք ուժ ու եռանդ չեն խնայում Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի և Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի պատմական որոշումներն անշեղորեն կենսագործելու համար:

Մեր բանակի և նավատորմի ամբողջ կյանքն ու մարտական գործունեությունը կապված է Սովետական Հայրենիքի բախտի հետ:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ

3886-57






digitised by A.R.A.R.@

ռևոլյուցիայի խոշորագույն նվաճումները, Սովետական Հայրենիքի պաշտպանության համար Կոմունիստական պարտիայի և նրա մեծ առաջնորդ Լենինի կողմից ստեղծված Սովետական Բանակը 39 տարիների ընթացքում անցել է փառապանծ ուղի։

Իմպերիալիստական զավթիչների դեմ մղված կատաղի մարտերում Սովետական Բանակը պատվով է պաշտպանել մեր Հայրենիքի պատիվը, ազատությունն ու անկախությունը։

Օտարերկրյա ինտերվենտների և ներքին հակառևոլյուցիայի դեմ 1918—1920 թվականներին և գերմանա-ֆաշիստական զավթիչների ու ճապոնական իմպերիալիստների դեմ Հայրենական Մեծ պատերազմում տարած համաշխարհային-պատմական հաղթանակները համոզիչ կերպով ցույց տվին, որ Սովետական Զինված Ուժերը մեր Հայրենիքի հուսալի պաշտպաններն են։

Ի դեմս Սովետական Բանակի աշխարհի բոլոր ազատասեր ժողովուրդները տեսնում են իրենց ազատարարին, որը մարդկությանը փրկեց ֆաշիստական բարբարոսությունից և այժմ կանգնած է խաղաղության և բոլոր ժողովուրդների անվտանգության պահպանության դիրքերում։



Սոցիալիստական Հայրենիքը արտաքին հարձակումներից պաշտպանելու հարցը Վ. Ի. Լենինի կողմից բազմակողմանիորեն մշակվել և տեսականորեն հիմնավորվել է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից դեռ շատ առաջ։

Իսկ 1918 թվականի հունվարի 28-ին Վ. Ի. Լենինն արդեն ստորագրում է բանվորագյուղացիական Կարմիր Բանակ կազմակերպելու մասին դեկրետը։ 1918 թվականի փետրվարի 14-ին ստորագրվեց Սովետական Ռազմա-Ծովային Նավատորմ կազմակերպելու մասին Դեկրետը։

Բայց Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ծնունդը համարվում է 1918 թվականի փետրվարի 23-ը, այն օրը, երբ ռևոլյուցիոն երիտասարդ բանակը Նարվայի և Պսկովի տակ առաջին հիասքանչ հաղթանակը տարավ գերմանական իմպերիալիզմի բանակների դեմ։

Մեր բանակի ստեղծումը տեղի ունեցավ այն ժամանակ, երբ ամբողջ աշխարհի իմպերիալիստները փորձում էին ոչնչացնել երիտասարդ Սովետական Ռեսպուբլիկան և անգլիական ու ամերիկյան իմպերիալիստների ղեկավարությամբ կազմակերպեցին 14 պետությունների արշավանք։ Այդ և իմ-



digitised by A.R.A.R.@

պերիալիստական մյուս արշավանքներն անփառունակ վախճան ունեցան։ Նրանք ջախջախվեցին երիտասարդ Սովետական Բանակի հարվածների տակ։

Կապիտալիստական երկրներում բանակը պաշտպանում է շահագործողների շահերը, այն օգտագործվում է աշխատավորներին ճնշելու և ուրիշ երկրներ ու ժողովուրդներ ստրկացնելու համար։

Կապիտալիստական պետություններում, առանձնապես ԱՄՆ-ում, բանակը հանդես է գալիս որպես ժողովրդական ազատության դահիճ։

Ներկա պայմաններում, երբ Սովետական կառավարությունը ՍՄԿՊ XX համագումարի որոշումների հիման վրա աշխարհի բոլոր երկրների նկատմամբ վարում է հետևողական խաղաղասիրական քաղաքականություն, ամերիկյան իմպերիալիստները ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ զրպարտչական պրոպագանդա են մղում, ծավալում են սպառազինությունների մրցավազք, բորբոքում են նոր պատերազմ։

Անգլո-ֆրանսիական և իսրայելական իմպերիալիստները 1956 թվականի հոկտեմբերին զավթողական պատերազմ սկսեցին



Եգիպտոսի ազատասեր ժողովրդի դեմ, նըպատակ ունենալով ստրկացնել եգիպտական ժողովրդին։ Բայց իմպերիալիստների ավանտյուրիստական պլանը խայտառակ ձախողման մատնվեց։

Խաղաղասեր ժողովուրդների ջանքերով, որոնց առջևից ընթանում է Սովետական Միությունը, Եգիպտոսի ժողովուրդը ագրեսորներին դուրս շպրտեց իր հայրենի հողից և այժմ ձեռնամուխ է եղել իմպերիալիստական բարբարոսների կողմից հասցված ավերածությունների լիկվիդացմանը։

Ամերիկյան իմպերիալիստների դրդմամբ 1956 թվականի հոկտեմբեր ամսին Հունգարիայում կազմակերպվեց հակառևոլյուցիոն խռովություն, որի նպատակն էր տապալել երկրում գոյություն ունեցող ժողովրդա-դեմոկրատական կարգը և վերականգնել ֆաշիստական կարգերը։ Հունգարական ժողովուրդը սովետական զորքերի օգնությամբ ոչնչացրեց ֆաշիստական խռովարարների բանդաները և այժմ բանվորա-գյուղացիական ռևոլյուցիոն կառավարության ղեկավարությամբ և սոցիալիստական լագերի երկրների օգնությամբ վերականգնում է ժողովրդական տնտեսությունը։

Սովետական Բանակը խորապես տարբեր-



digitised by A.R.A.R.@

վում է կապիտալիստական պետությունների բանակներից։ Մեր բանակը ազատագրված բանվորների և գյուղացիների բանակ է, պրոլետարիատի դիկտատուրայի բանակ, իսկապես ժողովրդական բանակ։ Նա հանդիսանում է մեր երկրի ժողովուրդների միջև բարեկամության բանակ, ստրկացված ժողովուրդների ազատագրման բանակ։

Ի հակադրություն կապիտալիստական բանակների, որոնք դաստիարակվում են մարդատյացության ոգով, Սովետական Բանակը դաստիարակվում է Կոմունիստական պարտիայի կողմից ինտերնացիոնալիզմի ոգով, մյուս երկրների ժողովուրդների նկատմամբ հարգանքի ոգով։

Վ. Ի. Լենինը սովետական ժողովրդին նախազգուշացնում էր, որ իմպերիալիստները վաղ թե ուշ հարձակվելու են մեր երկրի վրա, ուստի անհրաժեշտ է Հայրենիքը ակտիվ պաշտպանության նախապատրաստել։

Կատարելով Լենինի ցուցումը, Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը խաղաղ շինարարության տարիներին անընդհատ ամրապնդեցին մեր երկրի ռազմա-տնտեսական հզորությունը։

Սովետական Միությանը նախապատրաստելով ակտիվ պաշտպանության, պարտիան



և կառավարությունը ստեղծեցին նյութական այնպիսի բազա, որը հնարավորություններ տվեց պատերազմի ընթացքում ծավալել ռազմական անխափան արտադրություն։ Կարճ ժամանակամիջոցում մեր երկրում պատրաստվեցին հրետանավորների, տանկիստների, օդաչուների և ռազմական գործին գիտակ բազմաթիվ այլ կադրեր։ Բանակը հագեցվեց առաջնակարգ տեխնիկայով։

Սովետական Բանակի կործանիչ ուժը օտարերկրյա զավթիչները զգացին դեռևս 1938 թվականին, երբ ճապոնական իմպերիալիստները Խասան լճի շրջանում ներխուժեցին մեր երկրի տերիտորիան։

1941 թվականի հունիսի 22-ին ֆաշիստական Գերմանիան ուխտադրուժ կերպով հարձակվեց մեր երկրի վրա։ Սկսվեց Հայրենական Մեծ պատերազմը։ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին սովետական ժողովուրդը և նրա բանակը ոչ մի րոպե չկորցրին հաղթանակի նկատմամբ ունեցած հավատը։ Սովետական ռազմիկները և թիկունքի աշխատավորները Սովետական Միության Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ իրենց բոլոր ուժերն ու միջոցները նվիրաբերում էին թշնամու ջախջախման գործին։



digitised by A.R.A.R.@

Սովետական Բանակը ֆաշիստական օկուպանտներից ոչ միայն լիովին մաքրեց մեր Հայրենիքի տերիտորիան, այլև պատվով կատարեց իր ազատագրական մեծ միսիան, օգնության ձեռք մեկնելով Լեհաստանի, Ռումինիայի, Հունգարիայի, Բուլղարիայի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի, Ալբանիայի և Եվրոպայի մյուս ժողովուրդներին։

Սովետական պետության և Նրա Զինված Ուժերի պատմության մեջ պանծալի տարեթիվ է 1945 թվականը, երբ Սովետական Զինված Ուժերը լիովին ջախջախելով հիտլերյան ֆաշիստական բանակը, հաղթանակի դրոշ բարձրացրին Բեռլինում։

Բեռլինի համար մղվող մարտերում Սովետական Բանակի կողմից մասնակցում էին 41 հազար թնդանոթ և ականանետ, 8 հազար 400 ինքնաթիռ, 6 հազար 300 տանկ։ Պատերազմի միայն վերջին երեք տարիներին Հայրենական արդյունաբերությունը տարեկան արտադրում էր 30 հազար տանկ և զրահամեքենա, 40 հազար ինքնաթիռ, 120 հազար թնդանոթ, 100 հազար ականանետ։

Հայրենական Մեծ պատերազմի պատմության մեջ հավերժ կապրի Ալեքսանդր Մատրոսովի անմահ սխրագործությունը։ Նա ճա-



կատամարտի ծանր պահին իր մարմնով ծածկեց թշնամու ԴԶՕՏ-ի հրակնատը և իրեն զոհեց հանուն հաղթանակի։ Ռուս ժողովրդի փառապանծ զավակի սխրագործությանը հետևեցին ուկրաինացի Ալեքսանդր Շևչենկոն, հայ Հունան Ավետիսյանը և ուրիշներ։

Հայրենական Մեծ պատերազմում ուժեղ և նենգ թշնամու՝ գերմանական ֆաշիզմի դեմ մեր հաղթանակը մեկ անգամ ևս հաստատեց անմահ Լենինի իմաստուն խոսքերը՝ որ երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորներն ու գյուղացիներն իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց Սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակը իրենց և իրենց զավակների համար կապահովի կուլտուրայի բոլոր բարիքներից, մարդկային աշխատանքի բոլոր ստեղծագործություններից օգտվելու հնարավորությունը։

Սովետական ժողովուրդը և աշխարհի բոլոր ազատասեր ժողովուրդները պատերազմ չեն ցանկանում։ Նրանք պայքարում են պատերազմի հրձիգների դեմ, վիժեցնելով իմպերիալիստների ավազակային պլանները։

---

digitised by A.R.A.R.@

# ԻՆՉՊԵՍ ԱՆՑԿԱՑՆԵԼ ԶՐՈՒՅՑ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՄԱՍԻՆ

Վ. ԽՆԳԻԲԱՐՅԱՆ

*Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների առաջիկա ընտրությունները դիմավորում են քաղաքական և աշխատանքային բուռն խանդավառության պայմաններում։*

*Կատարելով պարտիայի XX համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները, ընտրողները մեծ խանդավառությամբ պայքարում են վեցերորդ հնգամյակի երկրորդ տարվա պլանները գերազանց ցուցանիշներով կատարելու համար։ Ամեն օր ուրախալի լուրեր են ստացվում այն մասին, թե ինչպես արդյունաբերական ձեռնարկությունները գերակատարում են արտադրական պլանները և միաժամանակ բարելավում թողարկվող արտադրանքի որակը, իսկ*



*կոլտնտեսությունները, սովխոզները և ՄՏ կայանները հաջողությամբ նախապատրաստվում են գարնանացանին։*

*Նախընտրական կամպանիայի այս օրերին մեծ և պատվավոր անելիքներ ունեն մեր ագիտատորները։ Ու՞մ հայտնի չէ, որ ի դեմս ագիտատորի ընտրողները տեսնում են իրենց հարազատ Կոմունիստական պարտիայի ներկայացուցչին, նրա կարծիքն արտահայտողին, նրա որոշումների կատարման համար, աշխատավորների շահերի համար մարտնչողին։ Ուստի տեղական Սովետների առաջիկա ընտրությունները հաջողությամբ անցկացնելու գործում խոշոր նշանակություն ունի բնակչության մեջ կատարվող ագիտացիոն-քաղաքական աշխատանքը։*

*Այժմ ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ ընտրողների լայն շրջանում հանգամանորեն և սիստեմատիկաբար մասսայականացնել ընտրությունների Կանոնադրությունը։ Հասնել այն բանին, որ ամեն մի ընտրող լավ յուրացնի և հստակ պատկերացում ունենա ընտրությունների Կանոնադրության մասին։ Այսպես, օրինակ, երբ ագիտատորը ունկնդիրների հետ զրույց է ունենում սովետական ընտրական սիստեմի մասին, նշելով, որ մեզ մոտ դեպուտատների ընտ-*



digitised by A.R.A.R.@

բությունները կատարվում են ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ, հարկավոր է միաժամանակ կոնկրետ օրինակներով մերկացնել բուրժուական կեղծ դեմոկրատիան և ցույց տալ, որ այն շահագործողների դեմոկրատիա է։ Օրինակ, կապիտալիստական երկրներում, միլիոնավոր երիտասարդներ զրկված են ընտրելու և ընտրվելու իրավունքից։ Դանիայում պառլամենտական ընտրություններին կարող են մասնակցել 35 տարեկանից ոչ պակաս քաղաքացիները, իսկ Բելգիայում՝ 40 տարին լրացած քաղաքացիները։ Այնինչ Հայկական ՍՍՌ-ում 18 տարին լրացած բոլոր քաղաքացիները, անկախ ռասայական ու ազգային պատկանելիությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից և անցյալ գործունեությունից, իրավունք ունեն մասնակցելու ընտրություններին։

ԱՄՆ-ում ձևականորեն սահմանված է, որ ընտրություններին կարող են մասնակցել 21 տարին լրացած քաղաքացիները, բայց այնտեղ բազմաթիվ ցենզերով արգելքներ են ստեղծված աշխատավորների նկատմամբ և նրանց մեծ մասը փաստորեն զրկված է ընտրելու և ընտրվելու իրավունքից։ Օրինակ,



ըստ նստակեցության ցենզի մի շարք նահանգներում ընտրական ցուցակների մեջ գրանցում են նրանց, որոնք տվյալ վայրում բնակվում են ոչ պակաս, քան 2 տարի։ Ինչ խոսք, որ այդ սահմանափակումն ուղղված է առաջին հերթին գործազուրկների դեմ, որոնք աշխատանք որոնելու պատճառով ստիպված են անընդհատ փոփոխել իրենց բնակավայրը, իսկ այնուհետև սեզոնային բանվորների դեմ, որոնք չեն կարող երկար ժամանակ նույն տեղում մնալ։

Հակառակ դրան, մեզ մոտ ընտրողների ցուցակների մեջ են մտցվում այն բոլոր քաղաքացիները, որոնք ընտրական իրավունք ունեն և ցուցակներ կազմելու պահին ապրում են (մշտապես կամ ժամանակավորապես) տվյալ Սովետի տերիտորիայում։

ԱՄՆ-ում այժմ գոյություն ունի աշխատավորներին ընտրական իրավունքից զրկելու մոտ 60 տեսակ սահմանափակում։ Այդ է պատճառը, որ այնտեղ գնալով պակասում է ընտրողների թիվը։ Օրինակ, 1944 թվականին ընտրություններին մասնակցել է ընտրողների 55 տոկոսը, 1948 թվականին՝ 50 տոկոսը և 1952 թվականին 50 տոկոսից էլ պակաս, իսկ 1954 թվականի կոնգրեսի ընտրու-



digitised by A.R.A.R.@

թյուններին մասնակցեց ընտրողների միայն 45 տոկոսը։ 1956 թվականի պրեզիդենտական ընտրություններին 103 միլիոն ընտրողներից մասնակցել են 62 միլիոն ընտրող։ ԱՄՆ-ի առանձին վայրերում ընտրողները մասսայաբար զրկված են ընտրական իրավունքից։ Հարավային նահանգներում սովորաբար ընտրություններին հաջողվում է մասնակցել միայն ընտրողների 13 տոկոսին։

Ունկնդիրներին պարզաբանելով ընտրությունների Կանոնադրության այն պահանջը, որ մեզ մոտ դեպուտատների ընտրությունները հավասար են, յուրաքանչյուր քաղաքացի ունի մեկ ձայն, որ բոլոր քաղաքացիներն ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքներով, հարկավոր է միաժամանակ նրանց ուշադրությունը բևեռել այն հանգամանքի վրա, որ կապիտալիստական երկրներում հավասար ընտրական իրավունքը խաբեություն է։ Ինչո՞ւ, որովհետև կապիտալիստական երկրներում ընտրական օկրուգները կազմվում են անհավասար թվով ընտրողներից։ Անգլիայում բազմաթիվ ռայոններ, որոնք ունեն մեծ թվով ընտրողներ, ընտրում են այնքան դեպուտատներ, որքան սակավ բնակիչներ ունեցող ռայոնները։

ԱՄՆ-ում կիրառվում է տխրահռչակ «ընտ-



րական աշխարհագրությունը», որի միջոցով ընտրական օկրուգներն այնպես են կազմում, որպեսզի կապիտալիստներին հուսալի քիչ թվով ընտրողներն ավելի շատ դեպուտատներ ընտրեն, քան բանվորներով բնակեցված և ավելի շատ ընտրողներ ունեցող օկրուգները։ Բացի այդ, բազմաթիվ կապիտալիստներ մեկի փոխարեն ստանում են 2 և ավելի ձայն։ Անգլիայում բանկիրները, գործարանատերերը, կալվածատերերը և այլ սեփականատերեր ընտրությունների ժամանակ ստանում են մի քանի ձայն։ Նրանք ձայն են ստանում, թե այն օկրուգից, որտեղ իրենք բնակվում են և թե այն օկրուգից, որտեղ գտնվում է իրենց սեփականությունը։

Ինչպես հայտնի է, մեզ մոտ կանայք մասնակցում են ընտրություններին տղամարդկանց հետ հավասար իրավունքներով։

Ընտրությունների Կանոնադրության այս հոդվածը մեկնաբանելիս ագիտատորը ունկնդիրներին կարող է հիշեցնել կապիտալիստական երկրներում գոյություն ունեցող սեռային ցենզի մասին։ Ըստ այդ ցենզի, կանայք մի շարք կապիտալիստական երկրներում իրավունք չունեն մասնակցելու ընտրություններին։ Ինքնին հասկանալի է, որ նման արգելքը զրկում է միլիոնավոր աշ-



digitised by A.R.A.R.@

*խատավոր կանանց մասնակցելու երկրի կառավարման գործին։*

*Դրան հակառակ մեզ մոտ կանայք ակտիվորեն մասնակցում են պետական գործերի ղեկավարմանը։ Օրինակ, 348 կանայք ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են, ավելի քան 2 հազար կանայք միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների և ավելի քան կես միլիոն կանայք տեղական Սովետների դեպուտատներ են։ Ժողովրդական դատավորներ են ընտրվել 2.335 կանայք և այլն։*

*Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 114-րդ հոդվածի հիման վրա դեպուտատների ընտրությունները ուղղակի են։ Աշխատավորների դեպուտատների շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային Սովետների ընտրությունները քաղաքացիները կատարում են անմիջականորեն, ուղղակի ընտրությունների միջոցով։*

*Զրույցի ընթացքում ընտրությունների Կանոնադրության վերը հիշված հոդվածը պարզաբանելիս ագիտատորը կոնկրետ օրինակներ է բերում, թե ինչպես կապիտալիստական գրեթե բոլոր երկրներում դեպուտատներն անմիջապես չեն ընտրվում ընտրողների կողմից։ Այնտեղ կիրառվում է անուղղա-*



*կի կամ բազմաստիճան ընտրությունների սիստեմը, երբ ընտրողներն իրենք չեն ընտրում դեպուտատներ, այլ ընտրում են իրենց կողմից ներկայացուցիչներ (այսպես կոչված ընտրիչներ), որոնք պառլամենտի դեպուտատներ են ընտրում։*

*Սովետական ընտրական սիստեմի առավելությունը նաև այն է, որ ընտրությունների ժամանակ լիակատար կերպով պահպանվում է քվեարկության գաղտնիությունը։*

*Մերկացնելով բուրժուական կեղծ դեմոկրատիան, ագիտատորը կապիտալիստական մի շարք երկրների օրինակով, ունկնդիրներին ցույց է տալիս, որ այնտեղ երբեք չի պաշտպանվում ընտրությունների գաղտնիությունը։ Անգլիայում, օրինակ, ձևականորեն ճանաչված է քվեարկության գաղտնիությունը։ Սակայն այնտեղ ընտրողներին տալիս են այնպիսի բյուլետեն, որի կտրոնը մնում է ընտրական տեղամասում։ Այդ կտրոնի միջոցով շատ հեշտությամբ կարելի է իմանալ, թե ով է դեմ քվեարկել դեպուտատին։ Կամ ընտրողներին տալիս են համարակալված բյուլետեններ և համարները նշում նրանց անվան դիմաց։ ԱՄՆ-ում թույլատրվում է քվեարկել ուրիշի փոխարեն՝ ներկայացնելով լիազորագիր։*

3886-57

digitised by A.R.A.R.@

Կապիտալիստական մի շարք երկրներում և հատկապես ԱՄՆ-ում քվեարկությունը գտնվում է ոստիկանական հսկողության տակ։

Որպեսզի աշխատավորները հնարավորություն չունենան ընտրվելու պառլամենտում, այլ այնտեղ ընտրվեն միայն կապիտալիստներին ձեռնտու անձնավորություններ, այսինքն շահագործող դասակարգի ներկայացուցիչներ, Անգլիայում պահանջվում է, որ պառլամենտի դեպուտատության թեկնածուն 150 ֆունտ ստերլինգ գրավ դնի։ Գրավ դրված գումարը կորչում է, եթե թեկնածուն չի ստանում ընտրողների ձայների մեկ ութերորդ մասը։ Բացի այդ, պառլամենտի դեպուտատության թեկնածուներն առաջադրվում են զանազան քաղաքական պարտիաների, մեծ մասամբ բուրժուական պարտիաների կողմից։ Ինչ խոսք, որ այդ պարտիաները պառլամենտ կուղարկեն միայն կապիտալի հավատարիմ ծառաներին։

Վերը հիշված փաստերը ցույց են տալիս, որ կապիտալիստական երկրներում դեմոկրատական ընտրություններ չկան, որ այնտեղ իշխում են միայն աշխատավորներին շահագործող դասակարգերը։

---



# ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԸ ԸՆՏՐԱԿԱՆ ԿԱՄՊԱՆԻԱՅԻ ՕՐԵՐԻՆ

Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՀԿՊ Աշտարակի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

Ընտրողների շրջանում հետաքրքիր և բովանդակալից զրույցներ են անցկացնում Աշտարակի շրջանի Ջորափի Ռ. Լյուքսեմբուրգի անվան կոլտնտեսության ագիտատորները։ Ընտրողների հետ կատարվող այդ օրինակելի աշխատանքը բացատրվում է նրանով, որ ագիտկոլեկտիվը սիստեմատիկաբար օգնություն է ցույց տալիս ագիտատորներին։

Ագիտկոլեկտիվը ագիտատորների համար պարբերաբար սեմինար պարապմունքներ է ունենում, ուր քննարկվում են առանձին ագիտատորների զրույցները, ագիտատորներին ցույց է տրվում մեթոդական օգնություն, պարզաբանվում է, թե ինչպես անել, որ ունկնդիրների համար կազմակերպվող



digitised by A.R.A.R.@

զրույցները լինեն հետաքրքիր և նպատակահարմար։

Վերջերս ագիտատորների համար կազմակերպվեց սեմինար պարապմունք, որտեղ ագիտկոլեկտիվի ղեկավար Ի. Ղազարյանը մանրամասնորեն պարզաբանեց «ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումը կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին, ՄՏ կայանների և սովխոզների բանվորներին, պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, սովետական և գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսության մասնագետներին ու բոլոր աշխատողներին»։ Նա միաժամանակ իրենց կոլտնտեսության կյանքից վերցված կոնկրետ փաստերով ցույց տվեց այն լայն հնարավորությունները, որ կան կոլտնտեսությունում 1957 թվականին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ավելացնելու համար։ Բացի այդ, ագիտկոլեկտիվի սեմինարներում ագիտատորները լսել են կոլտնտեսություններում ինքնարժեքի իջեցման ուղիների, սովետական դեմոկրատիայի մասին թեմաներով զեկուցումներ։

Բացի սեմինարից, հաճախակի գումարվում են նաև ագիտատորների խորհրդակցու-



թյուններ, որտեղ նրանք հրահանգավորվում են պարտիայի ու կառավարության որոշումները մասսայականացնելու վերաբերյալ։ Օրինակ, երբ մամուլում հրապարակվեց նյութեր եղբայրական ռեսպուբլիկաներին ու մարզերին Լենինի շքանշաններով պարգևատրելու մասին, ագիտկոլեկտիվի նախագահը անմիջապես հրավիրեց ագիտատորների խորհրդակցություն։ Այդ խորհրդակցությունում ագիտատորները մանրամասն հրահանգավորվեցին ընկ. ընկ. Ն. Ս. Խրուշչևի, Ն. Ա. Բուլգանինի, Ա. Ի. Միկոյանի, Վ. Մ. Մոլոտովի և պարտիայի ու կառավարության մյուս ղեկավարների ճառերը մասսայականացնելու մասին։

Լավագույն ագիտատորների փորձի փոխանակման նպատակով ագիտկոլեկտիվում քննարկվում է ագիտատորների զրույցները. ուսումնասիրվում է, թե ինչ մեթոդով է պարզաբանվում նյութը և այն ինչպես է կապվում տվյալ կոլտնտեսականների գործնական աշխատանքի հետ, իսկ այնուհետև ընդհանրացվում է ամենահաջող զրույցը, որը փորձի փոխանակման կարգով ընդօրինակում են մյուս ագիտատորները։ Օրինակ, վերջերս լսվեց և քննարկվեց ագիտատոր ընկ. Գ. Ավետիսյանի զրույցը, որի թեման էր՝ ՍՄԿՊ



digitised by A.R.A.R.@

Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի արդյունքները։

Ագիտացիոն գրույցները գաղափարական-քաղաքական բարձր մակարդակով անցկացնելու գործում ագիտատորներին մեծ օգնություն է ցույց տալիս ագիտպունկտը։ Ագիտպունկտն ունի «օգնություն ագիտատորին» անկյուն և «տեղեկատու սեղան», որտեղ առանձնացված են գեղարվեստական, քաղաքական, գյուղատնտեսական, տեղական Սովետների ընտրություններին վերաբերվող գրականություն, ինչպես նաև օրվա թերթերից և ամսագրերից առանձին հոդվածներ։ Բացի դրանից, ագիտատորներին օգնելու նպատակով ակումբը հավաքում է նյութեր և հատկապես թվեր ու փաստեր շրջանի, իրենց կոլտնտեսության և առանձին բրիգադաների ձեռք բերած հաջողությունների մասին։ Այդ նյութերն ագիտատորներն հետագայում օգտագործում են իրենց զրույցներում։

Զորաւփի կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը որոշակի աշխատանք է կատարել նաև ցուցադրական ագիտացիայի կազմակերպման ուղղությամբ։ Ագիտպունկտում, անասնապահական ֆերմաների աչքի ընկնող տեղերում փակցված են բազմաթիվ լոզունգներ, կոչեր, պլակատներ սոցիալիս-



տական մրցության ընթացքի, կոլտնտեսության պլանների կատարման և տեղական Սովետների ընտրությունների վերաբերյալ։

Ագիտացիոն-բացատրական աշխատանքի լավագույն փորձ է կուտակել անասնապահական ֆերմայի ագիտատոր ընկ. Հ. Խաչատրյանը։ Նա սիստեմատիկաբար կոլտնտեսականների համար հետաքրքիր և նպատակային զրույցներ է կազմակերպում։ Կոլտնտեսականները միշտ գոհ են մնում իրենց ագիտատորից։ Ագիտատոր Հ. Խաչատրյանի հաջողությունը բացատրվում է նրանով, որ նա միշտ էլ խնամքով է նախապատրաստվում զրույցին, նա հաշվի է առնում թե իր ունկնդիրները որ թեման ինչպես կյուրացնեն, նրանցից ում, ինչպես պարզաբանել նյութը։ Ընտրելով զրույցի համար համապատասխան թեմա, ընկ. Հ. Խաչատրյանը խորը և բազմակողմանիորեն ուսումնասիրում է իր զրույցի թեման, նախօրոք հավաքում է թվական և փաստական հարուստ տվյալներ։

Վերջերս ագիտատոր Խաչատրյանը անասնապահական ֆերմայում ստեղծված կարմիր անկյունում կթվորուհիների և անասնապահների համար զրույց ունեցավ «Ինչպես հասնել բարձր կաթնատվության» թեմայով։

Ամենից առաջ ագիտատորը պատմեց, թե



digitised by A.R.A.R.@

անասնաբուծության մթերքների արտադրության ավելացման համար, կոլտնտեսային աշխատավորների առջև պարտիան ու կառավարությունը ինչ խնդիրներ են դրել։ Այնուհետև կոնկրետ օրինակներով ցույց տվեց, թե այդ ուղղությամբ ինչ է արված իրենց կոլտնտեսությունում։ Ագիտատորը միաժամանակ չխուսափեց թերությունները բացահայտելուց, որոնք գոյություն ունեն իրենց կոլտնտեսությունում անասնապահությունը զարգացնելու բնագավառում։ Ագիտատորը նշելով, որ անասնաբուծության զարգացման հիմքը կերի կայուն բազան է, որ առանց առատ կերի, ավելորդ է խոսել անասնաբուծության զարգացման, հատկապես կաթնատվության բարձրացման մասին, միաժամանակ ցույց տվեց, որ այդ գործում իրենց կոլտնտեսությունը անցյալ տնտեսական տարում չկարողացավ օգտագործել իր ունեցած բոլոր հնարավորությունները, փոխանակ ավելացնելու եգիպտացորենի ցանքատարածությունը և բերքատվությունը, ընդհակառակը, կոլտնտեսությունը 1956 թվականին հեկտարից ստացավ ավելի քիչ բերք, քան ստացել էր 1955 թվականին։

Ագիտատորի զրույցը հետաքրքիր անցավ



նաև «Սովետական ընտրական սիստեմը» թեմայի պարզաբանման ժամանակ։

Զորավի ագիտկոլեկտիվում լավագույն աշխատանք են կատարում նաև ուսուցիչ ագիտատորները, որոնք լիովին մասնակից են դարձել գյուղում տարվող քաղաքական-բացատրական աշխատանքներին։ Նրանցից շատերը իրենց դասախոսություններով և զեկուցումներով հանդես են գալիս կոլտնտեսականների առջև։

Ներկայումս գյուղում կատարվող ամբողջ քաղաքական ագիտացիան ի սպաս է դրված տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստական աշխատանքներին։ Ագիտատորները թաղային խմբակներում մասսայականացնում են տեղական Սովետների ընտրությունների կանոնադրությունը։ Պարտկազմակերպության խորհրդով ագիտատորները զրույցներ են ունենում առաջին անգամ ընտրողների և երիտասարդ ընտրողների հետ։ Ագիտատորների մի մասն այժմ թաղամասերում լույս է ընծայում ագիտթերթիկներ։

Գնալով ուժեղացվում է ագիտպունկտի աշխատանքը։ Ագիտպունկտում բացի զեկուցումներից, զրույցներից և կոնսուլտացիաներից, սահմանված է նաև հերթապահություն։



digitised by A.R.A.R.@

Հերթապահ ագիտատորը պատասխանում է ընտրողների հարցերին, օրվա բոլոր ժամերին։

Զորափի պարտկազմակերպության և ագիտկոլեկտիվի կողմից պարտիայի 20-րդ համագումարի և պարտիայի ու կառավարության հետագա որոշումները կոլտնտեսականների գիտակցությանը հասցնելու, քաղաքական-մասսայական աշխատանքը լավագույն ձևով կազմակերպելու շնորհիվ կոլտնտեսությունը հասել է զգալի հաջողությունների։ Ներկայումս նախապատրաստական լայն աշխատանքներ են տարվում գարնանացանը բարձր կազմակերպվածությամբ կատարելու համար։ Ավարտված է սերմերի զտման և նախապատրաստման աշխատանքները, վերանորոգվել են գյուղատնտեսական գործիքները։ Ստացված և պահեստավորված է մեծ քանակությամբ քիմիական և հանքային պարարտանյութեր։ Նշանակալից հաջողություններ կան անասնաբուծության բնագավառում, բարելավվել է անասունների խնամքը։

Տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստման կամպանիան քաղաքական և աշխատանքային հուժկու վերելք է առաջ բերել ինչպես ռեսպուբլիկայի, այնպես էլ Զորափի կոլտնտեսականների շրջանում։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

*Հաջողությամբ կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները Հայաստանի աշխատավորները նշանակալից հաջողություններ են ձեռք բերել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։*

★ *1956 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման տարեկան պլանը կատարվեց 103,5 տոկոսով։ 1955 թվականի համեմատությամբ արտադրանքի թողարկումը աճեց 9,4 տոկոսով։ Արտադրական ձեռնարկություններն անցյալ տարի յուրացրել և թողարկել են արտադրանքի ավելի քան 100 նոր տեսակներ։*

★ *Համեմատած 1955 թվականի հետ, 1956 թվականին սև պղնձի արտադրությունը ռեսպուբլիկայում ավելացել է 5 տոկոսով, սինթետիկ կաուչուկինը՝ 7,4 տոկոսով, ավտոդողերինը՝ 35 տոկոսով, գեներատորներինը՝ 116 տոկոսով, տրանսֆորմատորներինը՝ 42 տոկոսով, էլեկտրաշարժիչներինը՝ 15 տոկոսով, շարժական էլեկտրակայաններինը՝ 40 տոկոսով։*

★ *Անցյալ տարի ռեսպուբլիկայում էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացավ 3 տոկոսով։ Սկսեց գործել Սևան—Հրազդան կասկադի չորրորդ աստիճա-*



digitised by A.R.A.R.@

նի՝ Արզնու հիդրոէլեկտրակայանի 2 ագրեգատը։ Ուժեղ թափով առաջ է գնում Աթարբեկյանի կայանի կառուցման գործը, կազմվել է Երևանի նոր հիդրոէլեկտրակայանի շինարարության նախագիծը։

★ 1919 թվականի համեմատությամբ Սովետական Հայաստանում էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելացել է 1.200 անգամ։ Մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ մեր ռեսպուբլիկան արդեն հետ է թողել եվրոպական այնպիսի զարգացած երկրների, ինչպիսիք են Անգլիան, Ֆրանսիան և Հոլանդիան։

★ Ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերությունը անցյալ տարի պլանից ավելի երկրին տվել է 64 միլիոն ռուբլու արտադրանք, իսկ սննդարդյունաբերությունը՝ 120 միլիոն ռուբլու արտադրանք։

★ Ելնելով բնակչության հարաճուն պահանջմունքներից, թեթև արդյունաբերությունն այս տարի բամբակե գործվածքների արտադրությունն ավելացնելու է մոտ 6,3 միլիոն մետրով, մետաքսե գործվածքեղենինը՝ 414 700 հազար մետրով, բրդե գործվածքեղենինը՝ 1 միլիոն 800 հազար մետրով, տրիկոտաժեղենինը՝ 830 հազար զույգով, հազար կտորով, գուլպեղենինը՝ 300 հազար զույգով։ կոշկեղենինը՝ 300 հազար զույգով։

★ 1957 թվականի ընթացքում Երևանի բրդյա նուրբ գործվածքեղենի կոմբինատը յուրացնելու և թողարկելու է «Մասիս», «Սևան» տրիկոներ, «Նաիրի» կովերկոտ, մահուդի ֆաբրիկան՝ «Երևան» և «Հրազդան»



նոր տեսակի դրապներ, ավելանալու է արհեստական մետաքսի և շտապելային գործվածքների արտադրությունը։

★ Անցյալ տարի անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքը գերակատարեց բեռնման և բեռնաթափման պլանը։ Առաջավոր երկաթուղայիններ ծանրաքաշ գնացքներով փոխադրեցին ընդհանուր բեռների 67 տոկոսը և նորմայից ավելի փոխադրեցին կես միլիոն տոննա բեռ։ Նրանք տնտեսեցին ավելի քան 2,5 հազար տոննա վառելիք, փոխադրումների ինքնարժեքն իջեցրին 2,4 տոկոսով և տվեցին ավելի քան 4,5 միլիոն ռուբլու գերպլանային շահույթ։ 1956 թվականին շահագործման հանձնվեցին Երևանի և Ղափանի կայանների նորակառույց գեղեցիկ շենքերը։

★ Ռեսպուբլիկայի ավտոմոբիլային տրանսպորտը 1956 թվականի 10 ամսվա ընթացքում, 1955 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, փոխադրել է 15 տոկոսով ավելի բեռներ և 11,5 տոկոսով ավելի ուղևորներ։

★ Պետական ձեռնարկություններն ու հիմնարկությունները անցյալ տարի շահագործման հանձնեցին 82 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, այսինքն՝ 1,25 անգամ ավելի, քան 1955 թվականին։ Ավարտվեցին և շահագործման հանձնվեցին Երևանի և Աշտարակի խոշոր կամուրջները։

★ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները ժամկետից շուտ կատարեցին իրենց



digitised by A.R.A.R.@

անցյալ տարվա պետական պարտավորությունները։ Մսի պետական պարտավորությունը կատարվել է 103 տոկոսով, կաթինը՝ 100,8, բրդինը՝ 103,5, հացահատիկինը՝ 109, բամբակի հումքինը՝ 100,9, բանջարեղենինը՝ 106,3, խաղողինը՝ 141,8 տոկոսով։

★ Զգալի աշխատանք է կատարված այգիների ընդարձակման ուղղությամբ, տնկվել են 702 հեկտար խաղողի և 892 հեկտար պտղատու նոր այգիներ։

★ Խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը ռեսպուբլիկայում ավելացել է 25 տոկոսով։ Մեղրու շրջանում ամեն մի հեկտարից հավաքվել է 206 ցենտներ խաղող և 107 ցենտներ հատապտուղ, Շահումյանի շրջանի 18-րդ պարտհամագումարի անվան կոլտնտեսությունը հավաքել է 104 ցենտներ խաղող, Վեդու շրջանի Այգևան գյուղի կոլտնտեսությունը՝ 96,5 ցենտներ, Էջմիածնի շրջանի Արշալույս գյուղի կոլտնտեսությունը՝ 90 ցենտներ, Հոկտեմբերյանի շրջանի Արմավիր գյուղի կոլտնտեսությունը՝ 98 ցենտներ խաղող և այլն։

★ 1956 թվականին կոլտնտեսություններն ու սովխոզները կովերի գլխաքանակն ավելացրել են 3 հազար 366 գլխով, իսկ յուրաքանչյուր կովի կաթնատվությունը՝ 60 կիլոգրամով, բարելավվել է նրանց ցեղայնությունը։

★ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն անցյալ տարի պետությանը հանձնած բրդի դիմաց ստացել են 30 միլիոն ռուբլի ավելի եկամուտ, քան 1955 թվականին։



★ Ընդարձակվել է առողջապահական հիմնարկների ցանցը։ Միայն անցած մեկ տարում բացվել է 10 նոր հիվանդանոց, որից 8-ը գյուղական վայրերում։ Հիվանդանոցներում մահճակալների թիվն ավելացել է 570-ով, որից գյուղական վայրերում՝ 275։

★ Ներկայումս ռեսպուբլիկայում գործում են 340 ստացիոնար և շրջիկ կինոսարքավորումներ, որոնցից 282-ը գտնվում են գյուղական վայրերում։ Միայն անցյալ տարվա ընթացքում ստացվել և շրջաններն են ուղարկվել նոր տիպի 75 կինոսարքավորում։

★ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ավելի են վաճառվել բրդե կտորեղեն՝ 16,5 տոկոսով, մետաքսեղեն՝ 50 տոկոսով, հագուստեղեն՝ 52,5 տոկոսով, կոշկեղեն՝ 11 տոկոսով։

★ Քաղաքի և գյուղի բնակչությանը 1956 թվականի 10 ամսում վաճառվել են. ռադիոընդունիչներ՝ 26.100 հատ, տնային սառցարաններ՝ 5.550 հատ, լվացքի մեքենաներ՝ 7.210 հատ և կարի մեքենաներ՝ 5.700 հատ։

★ 1956 թվականին ռեսպուբլիկայում բացվել են 14 միջնակարգ դպրոց, 5 տարրական և 3 գիշերօթիկ դպրոց։ Ներկայումս Հայաստանում գործում է 1.184 դպրոց, որտեղ սովորում են մոտ 300 հազար աշակերտ։

★ Հայաստանում երաժշտական նոր դպրոցներ են բացվել Ապարանում, Արթիկում, Սևանում։ Դրա հետ միասին անցած տարվա 10 ամսում մեր քաղաքներում և գյուղերում բացվել են 7 ակումբներ, կուլտուրայի տներ և դրադարաններ։

---

digitised by A.R.A.R.@

# Ի՞ՆՉ ԲԱՆ Է «ԷՅԶԵՆՀԱՈՒԵՐԻ ԴՈԿՏՐԻՆԱՆ»

Աշտարակի շրջանի Ագարակ գյուղի կոլտնտեսության ագիտատոր Գալուստ Մուրադյանը դիմել է խմբագրությանը, խնդրելով պատասխանել հետևյալ հարցին՝ «Ի՞նչ բան է այսպես կոչված «էյզենհաուերի դոկտրինան»: Ստորև պատասխանում ենք այդ հարցին:

*Այս տարվա հունվարի 5-ին, ԱՄՆ-ի կոնգրեսի երկու պալատների (Ներկայացուցիչների պալատի և սենատի) համատեղ նիստում Միջին և Մերձավոր Արևելքի երկրների նկատմամբ ԱՄՆ-ի կառավարության քաղաքականության վերաբերյալ հատուկ ուղերձով հանդես եկավ ԱՄՆ-ի պրեզիդենտ Դուայտ Էյզենհաուերը: Ուղերձում Սովետական Միության դեմ ուղղված սովորական զրպարտչական հարձակումներից հետո պրեզիդենտը կոնգրեսից պահանջեց հատուկ իրավունք վերապահել իրեն՝ ԱՄՆ-ի զինված ուժերը օգտագործելու «Միջին Արևելքի երկրների պաշտպանությունն ապահովելու» համար: Այդ իրավունքը ԱՄՆ-ի պրեզիդենտին պետք է թույլ տա ռազմական գործողություններ ծավալել այնտեղ, որտեղ ինքը՝*



*պրեզիդենտը դա անհրաժեշտ կգտնի, այդ բանի համար նույնիսկ չխնդրելով կոնգրեսի թույլտվությունը, ինչպես պահանջում է երկրի կոնստիտուցիան:*

*Ի՞նչն է այդպես խիստ մտահոգություն պատճառել ԱՄՆ-ի պրեզիդենտին, ո՞վքեր են սպառնում Միջին և Մերձավոր Արևելքի ժողովուրդներին և ո՞ւմից է ուզում նրանց պաշտպանել ինքնիշխանության հավակնություն ունեցող պրեզիդենտը:*

*Բանը նրանում է, որ Միջին և Մերձավոր Արևելքի շատ երկրների ժողովուրդներ օտարերկրյա տիրապետության տասնյակ տարիների դաժան փորձով համոզվեցին, որ գաղութակալությունը՝ դա մի չարիք է, որը պետք է վերացնել ինչ գնով էլ որ ուզում է լինի: Միջին և Մերձավոր Արևելքում անգլիական, ֆրանսիական և մյուս իմպերիալիստների գաղութային երկարատև տիրապետությունը այդ երկրների բացառիկ բարենպաստ հնարավորություններով օժտված էկոնոմիկան վերածեց գաղութային շահագործման մի օբյեկտի և դարձրեց իր երկրի էկոնոմիկայի կցորդը: Օտարերկրյա իմպերիալիզմի քաղաքական և տնտեսական գերիշխանությունը այդ երկրների ժողովուրդներին հասցրեց քայքայման եզրը և զրկեց հետագա զարգացման ամեն մի հեռանկարից:*

*Արաբները ոտքի ելան, որպեսզի զենքով նվաճեն իրենց ազատ ու անկախ գոյության իրավունքը: Արաբական ժողովուրդների հակաիմպերիալիստական ազատագրական շարժումները լուրջ հաջողությունների հասան: Այդ պայքարի ընթացքում*



digitised by A.R.A.R.@

անկախության հասան Սիրիան, Լիբանանը, Հորդանանը, Թունիսը, Մարոկկոն, Եգիպտոսը, Սուդանը և այլ երկրներ։ Արաբական երկրների ժողովուրդների ազատագրական պայքարի ընթացքում կարևոր իրադարձություն հանդիսացավ Սուեզի ջրանցքի ընկերության ազգայնացումը եգիպտական կառավարության կողմից։ Արաբական ազգային-ազատագրական շարժման հուժկու հարվածների տակ թողնելով մի դիրքը մյուսի հետևից, անգլիական, ֆրանսիական և մյուս գաղութարարները որոշեցին գլխավոր ճակատամարտ տալ և վերականգնել իրենց նախկին դիրքերն այդ երկրներում։ Հրահրելով և օգտագործելով Իսրայելի պետության պրովոկացիոն գործողությունները, Անգլիան և Ֆրանսիան ավազակային հարձակում գործեցին Եգիպտոսի վրա։ Այդ ագրեսիան շուտով դատապարտվեց աշխարհի բոլոր ազատասեր և խաղաղասեր ժողովուրդների կողմից։

Ագրեսորները խայտառակ պարտություն կրելով, ստիպված էին թողնել եգիպտական տերիտորիան։ Գաղութակալությունը երկրագնդի այդ մասում խարխլվեց հիմնովին։ Ահա ամերիկյան բուրժուական «Նյու-Յորք Թայմս» թերթի բավականաչափ բնորոշ խոստովանությունն այդ մասին։ «Առաջին համաշխարհային պատերազմից հետո մինչև վերջին տարիներս,— գրում էր այդ թերթը 1956 թվականի դեկտեմբերի 30-ին։— Բրիտանիան բացարձակորեն տիրապետում էր Մերձավոր Արևելքում,



բայց վերջին ժամանակներս նա անընդունակ գտնվեց ազգային շարժման դեմ պահպանել իր դիրքերն այդ շրջանում այնպես, ինչպես Ֆրանսիան ի վիճակի չէր դիմանալ Հյուսիսային Աֆրիկայում։ Պաղեստինից և Սուեզի ջրանցքի գոտուց հեռանալուց հետո, անգլո-իրաքյան պայմանագիրը չեղյալ հայտարարելուց, Հորդանանից Գլաբբ փաշային վռնդելուց և Եգիպտոսի տերիտորիան ներխուժելու անհաջող փորձից հետո, ի՞նչ է մնացել Բրիտանիային Մերձավոր Արևելքում»։ Իսկապես, համարյա ոչինչ չի մնացել։ Եվ դրա համար շատ գոհ են արաբական ժողովուրդները։ Բայց ամերիկյան իմպերիալիզմին այդ ձեռնտու չէ։ Նրա կարծիքով անգլիական, ֆրանսիական և մյուս գաղութարարների հեռանալուց հետո այդ երկրներում առաջ է եկել մի ինչ որ դատարկ տարածություն, որը նրանք կոչում են «վակուում»։ Անհրաժեշտ է այդ դատարկ տարածությունը լցնել, պնդում են ամերիկյան մոնոպոլիստները, և այդ դատարկ տարածությունը պարտավոր են լցնել իրենք, ամերիկացիները։ Ահա այստեղից էլ «Էյզենհաուերի դոկտրինան»։ Բայց, քանի որ արաբական ժողովուրդները կարող են օրինական կերպով հրաժարվել ամերիկյան հովանավորությունից, այդ պատճառով էլ ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանները նորից լույս աշխարհ հանեցին Մերձավոր Արևելքին «սպառնացող սովետական վտանգի» վերաբերյալ ոչ անծանոթ առասպելը։

Միաժամանակ նրանք փորձում են տնտեսական օգ-



digitised by A.R.A.R.@

նության մասին դատարկ խոսքերով պճնազարդել իրենց բացահայտ գաղութարարական քայլը։ Դրա համար «դոկտրինայի» հեղինակները այդ երկրներին խոստացան 1958 և 1959 բյուջետային տարիներում տրամադրել 200 միլիոն դոլար։ Բայց արաբ ժողովուրդը լավ է հասկանում, թե ԱՄՆ-ի ղեկավար շրջաններին ինչի համար է պետք եկել «սովետական վտանգի» մասին առասպելը և 200 միլիոն դոլարի «օգնությունը»։ Ահա թե ինչ են գրում այդ կապակցությամբ արաբական և այլ երկրների թերթերը։ Սիրիական «Ալ-Ֆայխա» թերթը նշում է, որ Սիրիան ոչ մի «սովետական սպառնալիք» չի զգում, իրական սպառնալիքը արաբական երկրներին գալիս է իմպերիալիստական տերություններից։ Հնդկաստանում լույս տեսնող «Ամրիտա բազար պատրիկա» թերթը մատնանշում է, որ արաբների համար սպառնալիքը եկնում է ոչ թե ՍՍՌՄ-ից, այլ Անգլիայից և Ֆրանսիայից։ «Աշ-Շահաբ» թերթում եգիպտական հայտնի ժուռնալիստ Շարկայը արտահայտելով բոլոր արաբների կարծիքը, գրում է. «Էյզենհաուերը գիտե, որ Սովետական Միությունը չէր, որ հարձակվեց Եգիպտոսի վրա, որ ՍՍՌՄ-ը չէ, որ դավադրական գործունեություն է տանում Սիրիայի և Հորդանանի դեմ։ Էյզենհաուերը պետք է գիտենա, որ խաղաղության իսկական սպառնալիքը և Մերձավոր Արևելքում իսկական ագրեսիան հանդիսանում են ռազմական պակտերն ու բազաները»։

Կարելի է նման բովանդակությամբ քաղվածքներ



շատ բերել։ Բայց այսքանն էլ բավական է, որպեսզի ցույց տրվի այն մեծ հարգանքն ու վստահությունը, որ տածում են արաբական ժողովուրդները Սովետական Միության նկատմամբ։

Գաղութակալության դեմ արաբական ժողովուրդների մղած արդարացի պայքարը լրիվ հավանություն և պաշտպանություն է գտնում սովետական մարդկանց մոտ։ Ահա թե որտեղ է մեր երկրի նկատմամբ արաբների ունեցած մեծ սիրո և վստահության գաղտնիքը։ Հասկանալի է, թե ինչու ԱՄՆ-ի կառավարող շրջաններից եկող հակասովետական հերյուրանքները ոչ միայն հող չեն գտնում արաբական երկրներում, այլև առաջ են բերում այդ ժողովուրդների խորը զայրույթը։

Ինչ վերաբերվում է այդ երկրներին ԱՄՆ-ի խոստացած տնտեսական օգնությանը, ապա նրա էությունը բավականաչափ հաջող բնութագրում է եգիպտական «Ռոզա-էլ-Յուսեֆ» ամսագրի գլխավոր խմբագիր Իհսան Կադուսը։

«Էյզենհաուերի նոր պլանը,— գրում է նա,— դա դոլարի և զենքի օգնությամբ Միջին Արևելքում տիրապետություն հաստատելու պլան է, որը ոտնահարում է ՄԱԿ-ի Կանոնադրությունը և այդ շրջանի երկրների անկախությունը։ Էյզենհաուերի պլանը հիմնվում է «մտրակի և մեղրաբլիթի» ամերիկյան քաղաքականության նույն այն հին սկզբունքների վրա, որ արդեն վաղուց տապալվել է։ Այժմ բոլորն էլ գիտեն, որ ամերիկյան օգնությունը ոչ միայն օգուտ չի բերում, այլ, ընդհակա-



digitised by A.R.A.R.@

ռակը, քայքայում է այն երկրների էկոնոմիկան, որոնք այն ընդունում են, ինչպես այդ եղավ Թյուրքիայում, Իրանում և Պակիստանում»։

Չի կարելի չհամաձայնվել Կադուսի հետ, առավել ևս, երբ հայտնի է, որ գաղութարարներն ավելի շատ վերցնում են այդ երկրներից, քան նրանց տալիս։ Ի՞նչ արժեք ունի այն 200 միլիոն դոլարը, որը որպես օգնություն ամերիկացիները խոստանում են հատկացնել այդ երկրներին և այն էլ երկու տարվա ընթացքում, երբ միայն մեկ տարվա՝ 1955 թվականի ընթացքում անգլիական և ամերիկյան նավթային մոնոպոլիստները Մերձավոր Արևելքից տարել են 150 միլիոն տոննա նավթ, որը նրանց վրա նստել է ընդամենը 240 միլիոն դոլար, բայց որպես մաքուր շահույթ նրանից ստացվել է 1 միլիարդ 900 միլիոն դոլար։ Հարկ չկա սրան որևէ բան ավելացնել, քանի որ այս թվերն արդեն իրենք են խոսում իրենց մասին։

Պրեզիդենտ Էյզենհաուերի ուղերձում այս բոլորից բացի լուրջ անհանգստություն է հայտնվում արաբական երկրներում կրոնի, առանձնապես իսլամի ճակատագրի մասին։ Ընդ որում պնդվում է, որ կրոնը պաշտպանելու համար անհրաժեշտ է ամերիկյան զորքեր մտցնել այդ երկրները։ Դժվար է երևակայել ավելի ծիծաղելի և անհեթեթ բան, քան պրեզիդենտին անհանգստացնող այդ «պատճառները»։

Հայտնի է, որ իսլամը առաջ է եկել Ամերիկայի հայտնագործումից դեռ շատ առաջ։ Իր բազմադարյան



պատմության մեջ նա դիմացել է շատ հալածանքների, այդ թվում նաև եվրոպական երկրների մի քանի խաչակրաց արշավանքներին։ Իսլամը այժմ էլ գոյություն ունի և նա ոչ մեկի, առավել ևս ամերիկացիների պաշտպանության կարիքը չի զգում։ Բայց իրականում ամերիկյան մոնոպոլիստներին անհանգստացնում է ոչ թե իսլամի ճակատագիրը, այլ այդ շրջանում գործող օտարերկրյա նավթային մոնոպոլիաների ճակատագիրը։ Այս է ճշմարտությունը։

Բայց ինչպիսի կերպարանք էլ որ ընդունի ամերիկյան հովանավորությունը և օգնությունը Միջին և Մերձավոր Արևելքի երկրներին, միևնույն է՝ նա գաղութակալություն է՝ իրենից բխող բոլոր ծանր հետևանքներով։ Այդ է պատճառը, որ արաբական ժողովուրդները միահամուռ կերպով «ոչ» են ասում «Էյզենհաուերի դոկտրինային»։ Նրանք մերժում են օտարերկրյա ամեն մի միջամտություն իրենց կյանքին, ինչպիսի ձև էլ որ նա ընդունի և ինչպիսի անուն էլ որ նա կրի։

Սովետական ժողովուրդը հավանություն է տալիս «Էյզենհաուերի դոկտրինայի» դեմ այդ ժողովուրդների պայքարին և պաշտպանում է այն։ Կասկած չկա, որ խաղաղասեր ժողովուրդները խայտառակ ձախողման կմատնեն «Էյզենհաուերի դոկտրինան» այնպես, ինչպես այդ եղավ նրան նախորդած տխրահռչակ «Տրումենի դոկտրինայի» հետ։

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

digitised by A.R.A.R.@

# ԱՐԵՎՄՏԱԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՄԻԼԻՏԱՐԻՍՏՆԵՐԸ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՕՋԱԽ ԵՆ ՍՏԵՂԾՈՒՄ ԵՎՐՈՊԱՅՈՒՄ

Գ. ՊՈՆՈՄԱՐՅՈՎ

Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի կառավարող շրջանները, շարունակելով երկրի ուժեղացված վերառազմականացման կուրսը, ձեռնամուխ եղան Արևմտյան Գերմանիայի զինված ուժերի՝ բունդեսվերի կազմակերպմանը։

Այդ քաղաքականության վերջնական նպատակները ոչ մի կասկած չեն առաջացնում։ ԳՖՌ-ի ազդեցիկ շրջանները չեն թողել ռևանշի և ուրիշի տերիտորիաներ զավթելու մտադրությունը։ Հանուն այդ ավանտյուրիստական պլանների, նրանք ձգտում են Արևմտյան Գերմանիան վերածել Եվրոպայում նոր պատերազմի և ռեակցիայի օջախի։ Բունդեսվերի ստեղծումն ուղեկցվում է աղմկալի



միլիտարիստական պրոպագանդիստական կամպանիայով, որի ընթացքում էլ ավելի ակընհայտ է դառնում, որ նոր արևմտագերմանական բանակի առջև դրվում են ագրեսիվ խնդիրներ։

Բոննի կառավարության մինիստրները՝ նախկին հիտլերյան գեներալները, Արևմտյան Գերմանիայում լույս տեսնող բազմաթիվ միլիտարիստական թերթերի ու բրոշյուրների հեղինակները, ոչ միայն «հիմնավորում» և պրոպագանդում են «ուժի դիրքերից ելնող» տխրահռչակ քաղաքականությունը, այլև բացատրում են նրա կոնկրետ խնդիրները։ Օրինակ, արևմտագերմանական «Դեր շպիգել» ամսագրին տված նոր տարվա ինտերվյուի մեջ Բոննի կառավարության պաշտպանության մինիստր Շտրաուսը բացահայտ կերպով նորից խոստովանեց, որ արևմտագերմանական բանակը ռազմական գործողությունների է պատրաստվում ընդդեմ ՍՍՌՄ-ի և Արևելյան Եվրոպայի մյուս խաղաղասեր պետությունների։ Վերջերս Հաննովերում, նախկին էսէսականների հավաքում, պատերազմի սանձարձակ կոչեր էին արվում ընդդեմ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի։ Արևմտագերմանական միլիտարիստների օրգանների էջերում չեն պակա-



digitised by A.R.A.R.@

սում լեհական և չեխոսլովակյան հողերը զավթելու կոչ անող հոդվածները։

Դրա հետ մեկտեղ արևմտագերմանական զինվորականությունը չի թաքցնում նաև Արևմուտքի երկրների նկատմամբ իր ունեցած ռևանշիստական պլանները։ Այսպես, ԳՖՌ-ի միլիտարիստական շրջանների օրգան «Դեյչէ զոլդատենցայտունգ» թերթը, իր հրճվանքն արտահայտելով վերառազմականացման համար, պահանջում է ստեղծել «միասնական» Գերմանիա «Մաասից մինչև Մեմել», ներառյալ նաև Ֆրանսիային պատկանող Էլզաս-Լոթարինգիան և բելգիական ու դանիական մի քանի մարզեր։

Այն բանից հետո, երբ արևմտագերմանական բունդեստագը 1955—1956 թվականներին ընդունեց առաջին ռազմական օրենքները, սկսվեց Արևմտյան Գերմանիայի վերառազմականացման նոր էտապը՝ ընդհանուր ռազմական ծառայության հիման վրա մասսայական բանակի ծավալումը։ Բունդեսվերն արդեն ունի այդ բանի համար անհրաժեշտ ռազմական կադրերի կոնտիգենտ, որի հիմնական միջուկը կազմում են նախկին հիտլերյան զինված ուժերի զինվորական ծառայողները։ ԳՖՌ-ի ռազմական մինիստրությունը չի հրաժարվում նաև նախկին էսէսական-



ների ծառայությունից, թեև նրան լավ հայտնի է, որ էսէսական զորքերը համարվել են հանցագործ կազմակերպություններ երկրորդ համաշխարհային պատերազմում նրանց կատարած արյունալի չարագործությունների համար։ Ինչպես հաղորդվեց գերմանական մամուլում, դեռևս անցյալ տարվա հոկտեմբերի սկզբներին 1.310 նախկին էսէսականներ դիմում տվեցին բանակ մեկնելու մասին և նրանց մեծ մասը նշանակում ստացավ։

Անցյալ տարվա վերջերից սկսած Արևմտյան Գերմանիայում սկսվել է 1957 թվականին զորակոչի ենթակա զինապարտների ցուցակագրումը։ Մամուլի տվյալներով, ԳՖՌ-ի բարձր հրամանատարությունը հույս ունի լիովին ուսուցանել և ռազմական պատրաստության մեջ դնել ցամաքային զորքերը 1958 թվականի վերջին, ռազմա-օդային և ռազմածովային ուժերը մինչև 1959 թվականի վերջը։ ԳՖՌ-ի զինված ուժերի նախապատրաստությանը կմասնակցեն 28 հազար սպա, 110 հազար ենթասպա և 90 հազար ռազմական այլ մասնագետներ։

Այդ նույն ժամանակ արևմտագերմանական արդյունաբերողները և ֆինանսական մագնատներն արդեն հաշվում են Բոննի կառավարության ռազմական պատվերներից



digitised by A.R.A.R.@

տացվելիք ապագա շահույթները։ Չէ՞ որ
արևմտագերմանական զինված ուժերի ըս-
տեղծման վրա ենթադրվում է ծախսել առն-
վազն 45 միլիարդ մարկ։ Այդ գումարի կեսից
ավելին արդեն հատկացված է ռազմա-օդա-
յին ուժերի և ռազմա-ծովային նավատորմի
ստեղծմանը, ինչպես նաև զանազան ռազ-
մական օբյեկտների շինարարությանը։ Նա-
վաշինական ֆիրմաներն ստացել են 153
ռազմա-ծովային նավերի, իսկ ավիացիոն
ֆիրմաները՝ 1.153 ռազմական ինքնաթիռ-
ների կառուցման առաջին պատվերները։
Իմիջիայլոց, Արևմտյան Գերմանիայի շատ
արդյունաբերողներ ներգրավվել են ռազմա-
կան արտադրության մեջ և սկսել են ռազմա-
կան նյութեր բաց թողնել դեռ մինչև ռազմա-
կան օրենքների հաստատումը։ Այդ նույն
ժամանակ վերականգնվում և ռազմական
պատվերների ընդունմանն էին պատրաստ-
վում Համբուրգի և Վիլհելմսհաֆենի ռազմա-
նավաշինարարները, Ֆրիդրիխսհաֆենի, Բրե-
մենի և Շտուտգարտի ավիացիոն գործարան-
ները։ Նախկին հիտլերյան ավիարդյունա-
բերողներ և կոնստրուկտորներ Մեսսերշմիդ-
տը, Հեյնկելը, Դորնյեն և մյուսները զբաղ-
ված են գերմանական մարտական ռեակտիվ
ինքնաթիռների նոր տիպեր մշակելով։ Հե-



տազոտական աշխատանքներ են տարվում
նորագույն ռակետային ռազմական տեխնի-
կայի բնագավառում։
Փարիզի համաձայնագրերին համապա-
տասխան, որոնք ստորագրվեցին 1954 թվա-
կանին, ԳՖՌ-ն պարտավորվեց իր զինված
ուժերի թիվը սահմանափակել 500 հազար
մարդով, այդ թվում ցամաքային զորքերի 12
դիվիզիայով։ Այժմ, այդ «սահմանափա-
կումն» ընդունելուց երկու տարի անց, Արև-
մտյան Գերմանիայում մտցված է ռազմական
ծառայություն և ստեղծվում են մյուս ան-
հրաժեշտ բոլոր պայմանները, որպեսզի
պատրաստվեն միլիոնավոր մարզված ռազ-
մական կոնտիգենտներ, որոնք ցանկացած
ժամանակ կարող են վերածվել տասնյակ
կորպուսների և դիվիզիաների։
Հակառակ լայն ռեկլամի ենթարկված «պար-
տավորությունների», որոնք վերցվել են Փա-
րիզի համաձայնագրերին համապատասխան,
1956 թվականի դեկտեմբերին ԱՄՆ-ի ճնշման
տակ ՆԱՏՕ-ի խորհրդի սեսիան պաշտոնա-
պես թույլատրեց ԳՖՌ-ի զինված ուժերը
սպառազինել ատոմային զենքով։
Բունդեսվերի կազմավորման պրակտիկ
միջոցառումները անց է կացնում պաշտպա-
նության մինիստրությունը, որի աշխատա-

կիցների մեծ մասը անցյալում ծառայել է հրամանատարական պոստերում, հիտլերյան բանակում։ Պաշտպանության մինիստրության ռազմական ղեկավար խորհուրդը, որը ստեղծված է գլխավոր շտաբի փոխարեն, գլխավորում է, օրինակ, գեներալ լեյտենանտ Հոյզինգերը, նախկին հիտլերյան գլխավոր շտաբի օպերատիվ բաժնի պետը, զինված ուժերի վարչության պետ է նշանակված Ֆրանսիայում Հիտլերի օկուպացիոն զորքերի շտաբի նախկին ղեկավար գեներալ լեյտենանտ Շպեյդելը, բարձր հրամանատարական կադրերի հարցերի կոմիտեի մեջ է մտնում գեներալ Կունցինը, հիտլերյան բանակի կադրերի վարչության նախկին պետը։

Ռազմական այդ կադրերը այժմ ոչ միայն ղեկավարում են հիտլերյան օրինակով արևմտագերմանական բունդեսվերի ստեղծումը, այլև, ինչպես վկայում են մամուլի բազմաթիվ հաղորդումները, ամերիկյան ռազմական ղեկավարների հրավերով մասնակցում են ՆԱՏՕ-ի ստրատեգիական պլանների մշակմանը, այդ բանի համար օգտագործելով Արևելքում պատերազմի իրենց հարուստ փորձը։

Հաշվի առնելով աշխատավորների հակամիլիտարիստական տրամադրությունները.



արևմտագերմանական ռևանշիստները ըստիպված են ժամանակ առ ժամանակ դիմել դեմագոգիկ մանևրների, որպեսզի հանդստացնեն հասարակական կարծիքը։ Բայց, չնայած դրան, ԳՖՌ-ի բնակչության դժգոհությունը Բոննի կառավարության ռազմական միջոցառումներից շարունակում է աճել։ Դա արտահայտվում է ամենատարբեր ձևերով։ Օրինակ, հասարակական կարծիքի ուսումնասիրման ինստիտուտը Բիլեֆելդեում «ԷՄՆԻԴ» հաղորդեց, որ 1955 թվականի դեկտեմբերին վերառազմականացման դեմ արտահայտվել է ԳՖՌ-ում հարցում արված տղամարդկանց 59 տոկոսը, իսկ 1956 թվականի կեսին՝ 65 տոկոսը։ Ընդ որում հօգուտ վերառազմականացման անվերապահորեն արտահայտվել է հարցում արվածների միայն 5 տոկոսը։

Բունդեսվեր հավաքագրելու նախապատրաստման կապակցությամբ պաշտոնական պրոպագանդիստական կամպանիան բացահայտ կերպով ժողովրդականություն չի վայելում։ Բունդեսվերի ներկայացուցիչները, որոնք միլիտարիստական պրոպագանդա են տանում, հանդիպում են շարքային գերմանացիների անտարբերությանը, զայրույթին և թշնամական վերաբերմունքին։ Արևմտա-






digitised by A.R.A.R.@

գերմանական քաղաքներում տեղի են ունենում բողոքի ցույցեր ընդդեմ «Առաջին քայլեր» միլիտարիստական ֆիլմի ցուցադրման։ Պաշտպանության մինիստրը Բունդեստագի հանձնաժողովին տեղեկացրեց վերջին ժամանակներս բունդեսվերի զինվորների և քաղաքացիական անձանց միջև տեղի ունեցած ընդհարումների և բունդեսվերի նկատմամբ «վիրավորական գործողությունների» մասին։

ԳՖՌ-ի կառավարող շրջանները չեն ցանկանում ունկնդրել վերառազմականացման քաղաքականության դեմ ուղղված բողոքի ձայնին։ Խաղաղության առավել վճռական հետևողական կողմնակիցներին՝ գերմանական կոմունիստներին Արևմտյան Գերմանիայում հետապնդում են, նետում բանտերը, Գերմանիայի կոմունիստական պարտիան հայտարարված է արձակված։ Բայց, չնայած բոլոր դժվարություններին, պայքարը խաղաղության համար և ընդդեմ Արևմտյան Գերմանիայի նոր պատերազմի ու ֆաշիզմի օջախի վերացման, շարունակվում է։ ԳՖՌ-ի միլիոնավոր գերմանացիների հետ միասին Արևմտյան Գերմանիայի վերառազմականացման հակաժողովրդական քաղաքականության դեմ հանդես են գալիս Գերմանական



Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավորները։ Գերմանական ժողովրդի խաղաղասեր ուժերը այդ պայքարում հզոր պաշտպանություն են գտնում Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների կողմից, բոլոր նրանց կողմից, ում համար թանգ է խաղաղության գործը։

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ

digitised by A.R.A.R.@

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ— «Ռափայել Պատկանյան»։ Գինը 7 ռ., 266 էջ, տիրաժ 5.000։

Կ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— «Վահան Տերյան»։ Գինը 3 ռ. 20 կ., 155 էջ, տիրաժ 5.000։

Ա. ՇԱՀԻՆՅԱՆ— «Մեր գիշերային արկածները»։ Գինը 1 ռ. 25 կ., 89 էջ, տիրաժ 10.000։

Մ. ԿՈՐՅՈՒՆ— «Հազարան Բլբուլ»։ Գինը 1 ռ., 58 էջ, տիրաժ 15.000։

Ի. ԳՐԻՇԱՇՎԻԼԻ— «Բանաստեղծություններ»։ Գինը 3 ռ. 55 կ., 107 էջ, տիրաժ 3.000։

ԱՂ. ՎԱՐԴԱՆՅԱՆ— «Բանաստեղծություններ»։ Գինը 5 ռ. 75 կ., 276 էջ, տիրաժ 3.000։

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№3 1957 г.**

ՎՖ 01153 Պատվեր 140 Տիրաժ 8275

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.